Տիկին Գայեանէ Պ. Խունունց եւ Զաւակները՝ Գրիգոր, Գուրգէն եւ Յովհաննէս, սրտի խորին կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի ամուսնոյն եւ հօր՝

ՄՆԱՑԱԿԱՆ Յ. ԽՈՒՆՈՒՆՑԻ

յանկարծական մահը:

Յուղարկաւորութիւնը այսօր, Կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2ին, Փարիզի Հայոց Եկեղեցիին մէջ: Հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Thiais-ի գերեզմանատունը:




Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme :-: PARIS (13e)

Le Gérant : H. STEPHAN










*Բարձր հովանաւորութեամբ Ֆրանսայի Մարմնակրթութեան նախարար Մ. ՄԱՐՔՕՄԳԻ*

# Հ. Մ. Ը. Մ.Ի ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

**28 Յունուար Շաբաթ գիշեր,** Hôtel Moderneի *հոյակապ սրահներուն մէջ* Place de la République

*Ճոխ յայտագիր — Պարի և ծպտեալներու մրցումներ — Երկու մեծ նուագախումբ —. Ղեկավարութեամբ Պարի Փրօֆէսէօր՝ Գ. ԽԱՂՄՈՒՐԵԱՆԻ*

*ԾԱՆՕԹ.*— ծպտեալները պարտաւոր են ներկայացնել լափորները մրցումին կարենալ մասնակցելու համար:

*խապէս Իտալիա ընդունած էր որ ի հաշիւ պարտքերուն վար դրուելիք գումարին հարիւրին եօթնէս տոկոս վճարուի: Բայց երբ խնդրոյ առարկայ եղաւ տոկոս չտալ ապրանքներու գնման յատուկ մասին համար, Իտալիա առաջարկեց որ վերի տոկոսը աւելնայ, ինչ որ արգելք եղաւ բանակցութեանց առաջանալուն:*

*Միւս կողմէ, 30 միլիոն ոսկիի փոխառութեան համար Իտալիոյ ուզած ապահովութիւնը թէեւ բարեկամական ձեւով կարգադրուած է, բայց տոկոսի խնդրին շուրջ տարակարծութիւն ծագած է»:*

## ՉԵԿԱՅԻ ՎԱՐԻՉ ՄԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ

*Պուքրէշէն կը հեռագրեն թէ Չիղնաուի մէջ (Պեսարապիա) ձերբակալուեցաւ Օտեսայի Չեկային փոխ – տնօրէնը, Կրիկորի Տուաչէվ, որ այդ քաղաքը կը գտնուէր քանի մը օրէ ի վեր եւ պահուած էր տունի մը մէջ: Ձերբակալման պահուն, Տուաչէվ կատաղօրէն ընդդիմացաւ եւ ծխարձակ ռումբեր նետեց ոստիկաններուն դէմ. բայց չկրցաւ չկրցաւ ազատիլ: Բնակարանին մէջ խուզարկութիւն կատարուելով, կարեւոր փաստաթուղթեր երեւան հանուեցան:*

## ՄԱՐՍԻԼԻՈՅ ԵՒ ՇՐՋԱՆԻ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

Պուշ տիւ Ռօնի նահանգապետութիւնը պաշտօնական յայտարարութեամբ կը ծանուցանէ թէ այն օտարականները, որոնց ինքնութեան թուղթերու (քառդ տ'իտանթիթէ) ժամանակամիջոցը կը լրանայ 1932 դեկտ. 31ին, պէտք է ամենակարճ ժամանակամիջոցի մէջ, կեդրոնական ոստիկանատուն (Բօմիսարիա Սանթրալ, Փլաս տը լա Մաժօռ) ինքնութեան թուղթերու նիւղին դիմելով զանոնք վերանորոգեն: Գրասենեակները բաց են ամէն օր առաւօտեան ժամը 8էն մինչեւ կէս օր եւ ցերեկը վերջ 2էն մինչեւ 6:

Յառաջիկայ մարտ 31էն վերջ, ժամանակն անցած եւ չվերանորոգուած թուղթերու տէրերը՝ պատժական օրէնքի 471րդ յօդուածի 15րդ պարբերութեան համաձայն, պիտի հետապնդուին, առանց հաշուելու վտարումը:

## ՖԷԹՀԻ ՊԷՅ՝ ՈՒՈՇԻՆԿԹԸՆԻ ԴԵՍՊԱՆ

*Էնկիւրիէն հասած հեռագրի մը համաձայն, նախկին վարչապետ Ֆէթհի պէյ Ուաշինկթընի դեսպան պիտի նշանակուի, իսկ ներկայ դեսպանը (Մուխթար պէյ) հանգստեան պիտի կոչուի:*

*Պիտի փոխուի նաեւ Եգիպտոսի թրքական դեսպանը:*

---

## Յ. Հ. Դ. *Գաւառ*

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» ենթակոմիտէի ընկերական ընդհանուր ժողովը այս Ուրբաթ իրիկուն, ժամը ճիշդ *8.30*ին Պատանեկան Միութեան գրադարանին մէջ, *49*, րիւ Նասիոնալ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը կարեւոր է: Բացակաները խիստ նկատողութեան պիտի առնուին:

---

## Պ Ա Ր Ա Հ Ա Ն Դ Է Ս

*Ֆրանսական Բանակի Հայ Նախկին Կամաւորներու Միութեան տարեկան պարահանդէսը տեղի պիտի ունենայ* **8 Ապրիլ 1933** *Շաբաթ գիշեր: Կը խնդրուի ազգային կազմակերպութիւններէ եւ միութիւններէ նկատի ունենալ սոյն թուականը եւ չխաչաձեւել:*

---

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

### ՍՏԱՑԱՆՔ

*Տէսին, Յ. Պ.— 140:*
*Փարիզ (16), Տիկ. Բ.— 140:*
*Լիոն, Մ. Մ.— 150:*
*Թուր, Իս.— 35:*
*Լառոշէլ, Ա. Ս.— 70:*
*Ռոնի Սու Պուա, Թ. Ղ.— 70:*
*Համպուրկ, Պասմ.— 200: Մ.ի միջոցաւ:*
*Անվերս, Մ. Ի.— 200:*
*Լիոն-Վէզ, Ա. Տ.— 35:*
*Փարիզ, Ա.— 29.*
*Թուլօն, Բամ.— 140,*
*Սէն Թ'Ուէն, Յ. Մ.— 100:*

### ՆՈՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Շիրմէք, *Գ. Մ.— 33: Սկսանք ղրկել Դեկտ. 29 սկսեալ:*

Քաշան, *Մ. Հ.— Սկսանք ղրկել Յունուար 1էն:*

Փիւժէ Սիւռ Արժան, *Ս. Մ.— Նոյնպէս:*

Վիէն, *Գ. Ը.— Նոյնպէս:*

Լա Կարէն, *Տիկին Խ.— Նոյնպէս. Յունուար 1էն:*

Կալաց, *Ա. Մ.— Սկսանք ղրկել Թ. Ս.ի Յունուար 1էն:*

*Փարիզ, (5), Վ.— Նոյնպէս:*

## ՅԱՆՈՒՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՅԹԻ

*Փարիզի Հարաւային Շրջանի «Յառաջդիմասիրաց» Միութիւնը իր շրջանին մէջ ձեռնարկեց ի նպաստ տեղւոյն հայ դպրոցին հանգանակութեան: Ժողովուրդը ցոյց տուաւ խանդավառ ընդունելութիւն եւ սիրայօժար սկսաւ տալ Հայ Լեզուի եւ Մշակոյթի համար իր տուրքը:*

Ստորեւ կուտանք Ա. ցանկը նուիրատուներու.—

*Պ. Մանուկ Պալճըեան՝ 50 ֆր.: Պ. Պ. Մ. Ալթունեան, Լ. Տօնիկեան 25 ական ֆրանք, Ս. Գարակէօզեան, Ե. Թեւոնեան, Հ. Սրապեան, Պ. Վարդանեան, Յ. Յակոբեան, Թ. Սարաճեան 20 ական ֆր.: Համբարձումեան, Լ. Զորմիսեան,* Vepo Beuveriste, *Գ. Դաւիթեան, Յ. Շէրպէթճեան, Ե. Յովհաննէսեան 15 ական ֆրանք: Խանչերեան, Մալխասեան, Սահակեան, Տիկ. Յայսմիկ Խաչիկեան, Զալըքեան, Ադապապեան, Տ. Տէրօեան 10 ական ֆր.:* Christos *6 ֆրանք: Պօղոսեան, Բիւրքճեան,* Mlle Vassau, Nicolas, *Համբարձումեան, Տիկին Տէրտէրեան 5 ական ֆրանք: Ընդհ. գումար՝ 416 ֆր.:*

*Հանգանակութիւնը պիտի շարունակուի: Կը փափաքինք որ շրջանիս Հայութիւնը ինչպէս միշտ այս անգամ ալ ցոյց տայ իր համակրելի վերաբերումը:*

ի դիմաց
65 երկսեռ Մանուկներու
*Վարչութիւն*

---

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Կը փնտռուի ընիկ Կէմէրէկցի Աւետիս Թօրոսեան, 29 – 30 տարեկան, հօր անուն՝ Տէոս, մօր անուն՝ Նուրի: 1928ին կը գտնուէր Թուլուզ: Այժմ ուր գտնուիլը յայտնի չէ: Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել՝* Mihran Donabédian, 49, rue Mougrone, Vienne, (Isère):

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Ֆրանսական Բանակի Հայ Նախկին Կամաւորներու Միութեան Վարչութիւնը կը յայտարարէ որ* խթան *Թերթը Միութեան հետ որ եւ է կապ չունի:*

*Թերթին տնօրէնը հրաւիրուած է ջնջել* «Organe des Anciens Volontaires Arméniens de l'Armée Français» *խորագիրը:*

*Կը խնդրուի հայ մամուլէն արտատպել:*

**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Damesme :-: PARIS (13e)**
**Le Gérant : H. STEPHAN**

---

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄԵԾ ՕՓԵՐԱ

«Հայ_տրամ_Օփերէթ» խումբը ղեկավարութեամբ դերասան

### Ս. ՍՈՒՐԱԲԵԱՆԻ

*ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ ՎԵՐՋԻՆ ԱՆԳԱՄ ՅՈՎՀ. ԹՈՒՄԱՆԵԱՆԻ*

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՍԻՓԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ 50 ՀՈԳԻ ԲԵՄԻ ՎՐԱՅ

# Ա Ն Ո Ւ Շ

Օփերա 4 արար, 6 պատկեր

ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ ՍՏ. ՏԻԳՐԱՆԵԱՆԻ 15 ՀՈԳԻՆՈՑ ՕՐՔԷՍԹՐԸ

*8 Յունուար Կիրակի ցերեկ ժամը 2.45ին*

**Maison de la Mutualité**ի *մեծ սրահին մէջ*

**24 Rue St. Victor (5), Métro: Maubert-Mutualité**

*15 հոգինոց օրքէսթրը՝ ղեկավարութեամբ ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ*

*Գ. Արարէն ՏԷՐ եւ ՏԻԿԻՆ ՍՈՒՐԱԲԵԱՆ կը պարեն կովկասեան լեռնական պարեր:*

ՏՈՄՍԱԿՆԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ՝ 20, 15, 10 ԵՒ 7 ՖՐԱՆՔ

*ԿԸ ԾԱԽՈՒԻՆ ՍՈՎՈՐԱԿԱՆ ՏԵՂԵՐԸ*



## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### Հ. Յ. Դ. Լիոնի կոմիտէին երեկոյթը

ԼԻՈՆ, 1 յունուար (Յառաջ)· — Կազմակերպիչ ու խրախուսիչ էր բնանեկան երեկոյթը, զոր կազմակերպած էր Հ. Յ. Դ. Լիոնի Շրջ. Կոմիտէն,

կանչ մը, չնորհալի երգչուհի Օր. Մոլ. Տէր Պետրոսեանի բերնով. —

Բարի լոյսի զանգն է զարկում,
Զրնկ զրնկալէն անուշ, անո՜ւշ…
Լոյսը բացուեց մեր աշխարհին,
Զրնկ զրնկալէն անուշ անո՜ւշ…

Ա՜հ, երբ կը տեսնէք մեր խակական արշալոյսը, բարի լոյսին ծագումը…:

նակցութեան «քայքայման» երազով կը զառանցեն: Թող աչք եւ ականջ փակեն, ծոմ պահեն ու սաղմոս երգեն — «Դաշնակցութիւնը կը քայքայուի կոր…»:

Եօթնուկէս կտոր «Արեւ»ներ, ցնծացէք, Դաշնակցութիւնը կը քայքայուի՜…

Գիւղական առածը կ'ըսէ· — Որ չի զարկեմ քո շա՛ն, գէ ու խեծնէ եշլիկիս կարկտա՞ն…

Միսաք — Միրզէ

### ԾԻԾԱՂ

Դերասանուհին. — Պարոն տնօրէն, ամէնէն դժուար դերը ինծի վիճակեցաւ:

— Ի՞նչպէս, ամենադիւրին դերը տուի քեզի, քանի որ խօսելու բան մը չունիք:

— Ճիշդ այս պատճառով:

×

— Մայրիկ, մազերուդ մէջ ինչո՞ւ ճերմակներ կան:

— Անառակութիւն շատ կ'ընես, գիս կը նեղես եւ կը ճերմկնան:

— Ուրեմն դուն ինձմէ աւելի անառակ ըլլալու ես որ մեծ մայրիկին մազերը ճեփ-ճերմակ եղած են:

— Ես ամուսնոյն հետ երբեք վէճ չունիմ, երբ հարցի մը մէջ իրաւունք ունենամ, միշտ կը հաւանի:

— Բայց երբ ինք իրաւունք ունենա՞յ:

— Անիկա ցարդ պատահած չէ:

## ՆՈՐ ՄԵՐԿԱՑՈՒՄՆԵՐ

### ՏՕՔԹ. ՊԱՐՈՆԻԿԵԱՆԻ ՄԱՍԻՆ

ԽՄԲ. — Մեր ընթերցողներուն համար անծանօթ մը չէ Տոքթ. Պարոնիկեանը, որ շահագործելով կարգ մը Գերմանացիներու բարեմտութիւնը, տարիներէ ի վեր գործեր կ'ընէ: Իր վերջին ծրագիրն է՝ «Խրիմեան Ճեմարան»ի մը ցնորքը, հայ եկեղեցականներու պատրաստութեան համար:

Անա ինչ յայտնութիւն մը՝ իր մասին:

«Dr. Lepsius Deutsche Orient Mission»

միններ ներկայացնել, որոնք դաւախարախական նպատակներու հետեւած են եթէ թէ, կանդ չառնելով միաժամանակ բազմաթիւ այլ վարկաբեկումներու առաջ: Արդեօք հարկ կա՞յ հայ բանիմաց շրջանակներուն յիշեցնելու որ Տոքթ. Լեփսիուս այն անձը եղած է սկիզբէն ի վեր, որ իր այլ երախտիքներուն հետ միասին ամենախիստ կերպով միայն արտայայտուած է բոլոր այն օտար առաքելութիւններու մասին, որոնք Հայութեան ծոցին մէջ

թեան շրջանին յաջողեցաւ ընել իր ուժերու ներածէն ալ աւելին: Պետութիւն կազմակերպեց ամէնէն առաջ:

յատանի մէջ եւ խորհրդային իշխանութիւնը իր կանակը ունէր Հիւսիսի մեծ օգնականը»:

Մենք համոզուած ենք որ Պարոնիկեան եւ իւրայինք, Աթէնքի Մալըմեան Սրբազանին ոչ — քննական վերաբերմունքին վրայ հիմնուած, վերայիշեալ ոտնձգութիւնները կ'ընեն: Սակայն քանի որ անգամ մը նման զաւեր հրապարակի վրայ գոյութիւն ունին, ուստի մենք թէ՛ գերման ժողովուրդին արժանապատուութեան եւ թէ մեր անմոռանալի հիմնադրին ան

ուան յիշատակին հանդէպ պարտաւոր ենք յայտնապէս ակնկալելու որ հայ վարիչ շրջանակները մեր տարակուսանքները փարատեն»:

## ՄԱՄՈՒԼ

### ՄԵՐ ԵՐԿՈՒՆ ԵՒ ԱՆՈՆՑ ՏԱՍՆԵՐԿՈՒՆ

Երեւանցիները երկինք-գետին իրար կ'անցընեն, ապացուցանելու համար թէ Դաշնակցական կառավարութեան օրով Հայաստանը աւերակ էր, անտուն եւ թշուառ, իսկ այսօր դրախտ է դարձեր, շնորհիւ խորհրդային իշխանութեան:

Բանակ տուաւ անոր: Հիմնեց օրէնսդրութիւն: Տարաւ դիւանագիտական աշխատանք: Իրապէս եւ իրաւապէս ճանչցուց Հայաստանը ամբողջ աշխարհին: Ընդարձակեց սահմանները: Սարդարապատ, Մեհմէտ, Կարգաւորեց պետական ֆինանսները: Կերակրեց սոված գաղթականութիւնը եւ պատսպարեց զայն կրցածին չափ: Եւ այս բոլորը ըրաւ առանց խորհրդային Միութիւն մը ունենալու իրեն

Օր. ԶՈՒԱՐԹ ՊՕՏՈՒՐԵԱՆ
եւ
Պր. ՀՐԱՆԴ ՆԻԿՈՂՈՍԵԱՆ
Նշանուած
1 Յունուար 1933 Պանելօ



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (13)

## ՄԱԹԱ ՀԱՐԻ

### 2. ԼԸՓԻՔ ՓՈՂՈՑԻՆ ՄԷՋ

Զպիտի ուզէր ոչ մէկուն, նոյն իսկ Ճորճին, ցոյց տալ այդ նախատինքը: Արդէն շատ դժուարութեամբ համոզուած էր փոխադրուիլ Լըփիք փողոցի այդ տունը: Այնտեղ էր հիմա, բայց թոյլ չպիտի տար որ խանգարէին իր առանձնութիւնը:

Ճորճ երբեք չմտաւ այդ սենեակէն ներս: Ամէն անգամ որ Լիան դուրս կ'ելլէր տունէն, կը կղպէր դուռը, ներսը կը ձգէր երեխան՝ Օրօրան ու միասին կը տանէր բանալին: Այս նախազգուշութիւնը ձեռք ա

Երբեմն, Լիանի բացակայութեան, երախան կը ծեծէր դուռը: Բայց տարօրինակ կերպով հանդարտ, հնազանդ ու ինքն իր գլխուն երախայ մըն էր ան: Մխ մինակ, կը նստէր սենեակին մէջ ու մարդ չէր գիտեր թէ ինչով կը զբաղէր. Ճորճ անոր ձայնը անգամ չէր լսեր իր աշխատանոցէն:

Ուրեմն այս ձեւով Լիան Սոնրէլ դարձաւ Ճորճի սիրուհին: Կ'ապրէին միեւնոյն տանը մէջ, կը ճաշէին միասին ու Լիան թոյլ չէր տար Փօրէլի

մէն մարդ կ'երթայ հոն. Փօրէլի կապելային մէջ բոլորը իրար կը ճանչնան: Ամէն գիշեր միեւնոյն մարդիկը, միեւնոյն աղջիկները:

թամ ուր որ կ'ուզեմ, պէտք է ընեմ ինչ որ կը փափաքիմ: Անիկա գիտեմ այն օրէն ի վեր երբ գետինն անցնելիք

Թարգմ. Փ. Մ.
(Շարունակելի)

*մասնութիւն չահիլ նոր ընտրութեանց մէջ: Լուծուած խորհրդարանին մէջ իր կուսակցութիւնն ունէր 70 երեսփոխան, իսկ չամխաւորները՝ 54:*

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐ ՊՈՒԼԿԱՐԻՈՅ ԵՒ ՌՈՒՄԱՆԻՈՅ ՄԷՋ

*Սօֆիայէն կը հեռագրեն թէ 34 համայնավարներ ձերբակալուեցան, երբ ժողով կը գումարէին: Մէկը երեսփոխան է:*

*Ռումանիոյ մէջ ալ, խմբական ձերբակալութիւններ կատարուեցան: Երկու օրուան մէջ 160 համայնավարներ բռնուեցան Պուքրէշի մէջ, իսկ 100 հոգի՝ գաւառի մէջ:*

## ՎՐԱՑԻ ԻՇԽԱՆՈՒՀԻ ՄԸ ՓԱԽԱԾ

*Լեհ սահմանապահ զինուորները առջի օր ձերբակալեցին կին մը որ լեհական հողը մտած էր առանց անցագրի: Հարցաքննութեան ատեն, յայտարարեց թէ Տէրիշվիլի իշխանուհին է, վրացի: Իր պատմածին համաձայն, երեք ամիս ճամբորդած է Տոմսքէն մինչեւ սահմանագլուխ, գործարաններու մէջ աշխատելով կամ առանին գործեր կատարելով: Վերջերս իբրեւ խոհարարուհի ծառայած է սահմանամերձ Չեկայի գլխաւորին քով եւ յետոյ փախած:*

**Յ.** **Հ.** **Դ.**

## Գաւառ

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» ենթակոմիտէի ընկերական ընդհանուր ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն, ժամը ճիշդ *8.30*ին պատանեկան Միութեան գրադարանին մէջ, *49*, րիւ Նասիոնալ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը կարեւոր է: Բացակաները խիստ նկատողութեան պիտի առնուին:

### ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

*ՍԷՆ - ԺԻՒԼԻԷՆ — ՊՈՄՕՆԻ* «Զաւարեան» խումբի ընկերական ժողովը այս կիրակի, կէս օրէ վերջ ժամը *6.30*ին սովորական հաւաքատեղին, Ջեկոյց *10*րդ Շրջ. ժողովի: Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը:

*ՍԷՆ - ՄԱՐԿՐԻԹԻ* «Համազասպ» ենթակոմիտէի դասախօսական վիճաբանական ժողովը այս կիրակի երեկոյ ժամը 8ին իրենց սովորական հաւաքատեղին, կը դասախօսէ ընկեր *Ս. Միլտոնեան*: Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը:

*ՍԷՆԹ - ԱՆԹՈՒԱՆ* «ընկեր կարօ» խումբի դասախօսական վիճաբանական ժողովը այս կիրակի երեկոյ ժամը *7.30*ին սովորական հաւաքատեղին: կը դասախօսէ ընկեր X., Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը:

*ԼԱ ՍԻՕԹԱՅԻ* «Խաժակ» խումբի դասախօսական ժողովը այս կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2ին սովորական հաւաքատեղին: կը դասախօսէ ընկեր *Պ. Հիւսեան*:

*ԱՎԻՆԵՕՆ - ՍԷՆ - ՍԱԹՈՒՐՆԷՆԻ* «Անդրանիկ» խումբի ընկերական ժողովը այս կիրակի կէս օրէ վերջ ժամը *1.30*ին սովորական հաւաքատեղին, Ջեկոյց *10*րդ Շրջ. ժողովի, Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը:

## Փարիզ եւ շրջակաները

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ «Վռամեան» խումբը ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը Ուրբաթ երեկոյ ժամը *8.30*ին Ակումբին մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն: կարեւոր Օրակարգ:

**Ա. Ե. Հ. ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ** Իսի-լէ-Մուլինոյի մասնաճիւղի ընդհ. ժողովը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ իրիկուն, ժամը *8.30*ին ծանօթ հաւաքատեղին:

## Հրապարակային բանախօսութիւն

*ԱՌՆՈՒՎԻԼ ԼԷ ԿՈՆԷՍԻ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*ՎԱՂԸ ՈՒՐԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 9ին, Պ. ԿԱՐԱՊԵՏԻ ՍՐՃԱՐԱՆԻՆ ՄԷՋ*

75, rue Jean - Jaurès, Առնուվիլ - լէ - կոնէս

կը խօսի՝ *Պ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ*

**Փարիզի Գրական Ակումբ** *այս Շբ. իրիկուն, ժամը 9ին*, 131 rue Cambronne, métro Vaugirard: *Ջեկոյց* Պ. կարօ Սասունիէ, *«Շանթի նոր տրամը — Օշին-Պայլ»*: *Մուտքը ազատ է*:



## ՆՈՒԻՐԱՏՈՒՔ

*ՍՏԱՑԱՆՔ*

Լիոն, *Ա. Կ.— 140*:

Շաթօ տը վու, *Ա. Գ.— 70*:

Լա Շօ տը Ֆոն, *Գ. Ն.— 50 զուիցերիական ֆրանք*:

փարիզ, *(10), Ա. Շ.— 140*:

Սուլթանապատ, *Ս. Շահ.— 8 տոլար*:

*Քրիւազ, Գ. Խ.— 35*:

### ՆՈՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Ալփոռվիլ, *Քիրէչ.— 25 ֆրանք: Ստանք ղրկել Յունուար 1էն*:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Սէն Մարկրիթի (Մարսէյլ) «Համազասպ» ենթակոմիտէն իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկ. *Հրանդ Յարութիւնեան*ի դառնաղէտ մահուան առթիւ, իր պարագաներուն:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Ֆրանսահայ Կարմիր Խաչի Փարիզի մասնաճիւղը իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ այն բոլոր ազնիւ նուիրատուներուն եւ աշխատողներուն, որոնք իրենց նիւթական եւ բարոյական աջակցութեամբ սատարեցին իր բարենպատակ վաճառքին յաջողութեան:*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Հ. Մ. Ը. Մ.ի Ալֆորվիլի Սկաուտ Առաջնորդական Խորհուրդս, իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ տեղւոյս Հայ Աւետարանական Եկեղեցւոյ յարգելի անդամներուն, որոնք Միութեանս սարքած պարգեւաբաշխութեան առթիւ նուիրեցին 100 ֆրանք:*

*Նոյնպէս մեր շնորհակալութիւնները կը յայտնենք «Բիւրակն» երգչախումբի, եւ իր ղեկավար Պ. Սաքօ Յակոբեանի, որ իրենց երգերով փայլ տուին մեր հանդէսին:*

***

*Հ. Մ. Ը. Մ.ի Ալֆորվիլի Սկաուտական պարգեւաբաշխութենէն հետեւեալ թիւերը՝*

190, 152, 209, 288, 214, 233, 349, 335, 371, 329, 376, 416, 420, 418, 526, 684, 621, 683, 662, 721, 823, 960, 28, 29, 42, 45, 61, 68, 94:

*շահած են հետեւեալ թիւ առարկաները՝*

7, 18, 6, 19, 25, 27, 2, 12. 17, 24, 26, 10, 20, 23, 22, 3, 5, 14, 21, 13, 8, 9, 28, 29, 16, 15, 4, 1, 11:

*Առարկաները ստանալու համար մինչեւ 31 Յունուար պէտք է դիմել հետեւեալ հասցէին.*— Torkom Aivazian, 2ter des Pivoines, Alfortville (Seine):




**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme :-: PARIS (13e)**

**Le Gérant : H. STEPHAN**

Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN

նաւին մէջ, առաջին կարգէն: Բարեբախտաբար կարելի եղաւ ժամանակին հասնիլ եւ մարել հրդեհը: Վնասները աննշան են:

## Կացութիւնը Պաղեստինի մէջ

Մեծն Բրիտանիոյ սիոնական կազմակերպութեան տարեկան համագումարին մէջ, նախագահ Վայզման յայտարարեց.

— Հակառակ համաշխարհային տագնապին, կացութիւնը մեծապէս բարւոքած է Պաղեստինի մէջ, անցեալ տարուան ընթացքին: Գործազուրկ չկայ եւ նոյն իսկ կարելի է նոր գաղթականներ ընդունիլ: Հաշւի եղած է թէ ամէն ամիս իբր հազար հոգի կ'երթան Պաղեստին: Երկրին ելմտական վիճակն ալ գոհացուցիչ է:

### ԹՐՔՈՒՀԻՆԵՐՈՒ ՀՐՈՍԱԽՈՒՄԲ ՄԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՒ ԻԶՄԻՐԻ ՄԷՋ

Միմիայն կիներէ բաղկացած գողերու խումբ մը ձերբակալուեցաւ Իզմիրի մէջ: Խումբը կը գործէր երկու տարիէ ի վեր, լայն ճակատի մը վրայ: Ձերբակալուած են տասը կիներ, որոնք պատասխանատու կը համարուին վաթսուն դէպքերու համար: Խուզարկութիւններու հետեւանքով, ասոնց տուներուն մէջ գտնուեցան կարեւոր գողօններ ամէն տեսակ առարկաներու, քանի մը հազար ոսկի եւ կապոցներով թղթադրամ: Խումբը նոյն իսկ գողցուած առարկաներու վաճառման գործակալութիւն մը հաստատած էր Պոլսոյ հրապարակին վրայ, եւ կանոնաւոր առաքումներ կը կատարէր:

### ՆՈՐ ԽՌՈՎՈՒԹԻՒՆՆԵՐ ՍՊԱՆԻՈՅ ՄԷՋ

Դաւադրական նոր շարժում մը երեւան հանուեցաւ Սպանիոյ մէջ: Բազմաթիւ ձերբակալութիւններ կատարուեցան: Միայն Պարչելոնայի մէջ սպաննուեցան վեց հոգի, իսկ վիրաւորուեցան քսան հոգի: Դաւադրութեան կազմակերպիչներն են համայնավարները:

Դաւադիրները փորձեցին գրաւել Պարչելոնայի Թնդանօթաձիգներու զօրանոցը, բայց ետ մղուեցան, կրակի բռնուելով: Երկու հարիւր հոգի ձերբակալուեցան:

Շարժումը զսպուած կը համարուի:

## Փարիզ եւ շրջակաները

Յ. Հ. Դ.

ՀՐԱՉԴԱՆ խումբի հերթական ժողովը այս երեկոյ ժամը 8.30ին 32 Ave. des Gobelins սրճարանի վերնայարկը: Կը խօսի ընկեր Աշոտ Իսահակեան: Նիւթ՝ ՆԵՐԴԱՂԹԸ:

ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբի ժողովը այս Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին Քաֆէ Փըլթիթ Սուրսի ներքնայարկը: Մէթրօ Օտէօն: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Ներկայանալ անդամատետրով: Կը դասախօսէ ընկեր Վահան Համբարձումեան:

## Գաւառ

ԼԻՈՆԻ Զաւարեան խումբի ժողովը այս երեկոյ ժամը 8.30ին Դաշնակցութեան Ակումբ-ընթերցարանը: Ներկայանալ անդամատետրով:

ԼԻՈՆԻ անդամական ընդհ. ժողովը այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, Հ. Յ. Դ. Ակումբ-Ընթերցարանը: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատետրով: Պարտաւորիչ ներկայութիւն:



## ՀԱՆԴԷՍ-ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ի պատիւ ԱՐԺ. Տ. ՎԱՀԱՆ ՔԱՀԱՆԱՅ ԽՈՅԵԱՆԻ
ԻՐ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ԵՒ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ՅԻՍՆԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ԱՌԹԻՒ
իր հայրենակից Տրապիզոնցիներու եւ Պոլսեցի համակիրներու կողմէ
15 ՅՈՒՆՈՒԱՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3.30 — 7.30
VICTOR HUGO սրահին մէջ, 46bis, rue St. Didier
(Métro: Victor Hugo)
Բանախօսութիւն, գեղարուեստական բաժին ճոխ եւ ծրի պիւֆէ
ՄՈՒՏՔ 15 ՖՐԱՆՔ



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Կը փնտռուի ընիկ Կէմէրէկցի Աւետիս Թորոսեան, 29-30 տարեկան, հօր անունը՝ Տէոս, մօր անունը Նուրի: 1928ին կը գտնուէր Թուլուզ: Այժմ ուր գտնուիլը յայտնի չէ: Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել՝ Mihran Donabédianի, 49, rue Mougrone, Vienne, (Isère).

— Նուարդ Լօշեան կը փնտռէ իր հօրեղբօրորդին՝ Բարսեղ-Արփիար Լօշեանը (Պրուսայի Մեծ-Նոր գիւղէն), որ կը գտնուի Ֆրանսա: Կը խնդրուի իրմէ, եւ իր մասին լուր ունեցողներէն իմացնել Յառաջի:

— Տիկին Թագուհի Չարըգճեան կը փնտռէ իր որդին կեսարացի Արթինն Չարըգճեանը, որ մէկուկէս տարի առաջ փարիզէն մեկնած է գաւառ: Իր մասին լուր ունեցողներէն եւ հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Mme Takouhi Tcharekdjianի, 61, rue Piat, Paris (20).

— Աննա եւ Նազելի Կիւլլիւեան, կը փնտռեն իրենց քրոջաղջիկը Զարուհի Աստանալըեան, հօր անունը՝ Յակոբ, մօր անունը՝ Իսկուհի (Եոզկատի Պօղազլըեան գիւղաքաղաքէն): Վերջերս Ճիպէլիի որբանոցէն Ֆրանսա եկած է: Ամուսնացած է եւ կը գտնուի Փարիզ: Իր ամուսնոյն անունը և մականունը անծանօթ: Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել իր հօրաքոյրերուն՝ Anna Gullian, rue St. Martin, chemin de la Plaine, Grenobbe (Isère).

ԸՆԿ. ԱՐՍԷՆ ՏԷՐՏԷՐԵԱՆԸ (Նիս) կը խնդրուի իր հասցէն յայտնել ընկ. Հրանդ Ակոնայեանի 60 rue Piat, Paris (20).



Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN



## Ընտանեկան ցերեկոյթ-խնջոյք

կազմակերպուած՝
ՍԱՆՈՅՑՆԵՐՈՒ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ
ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ 2ԻՆ ՔԱՖԷ ՔԼԷՐ ԴԸ ԼԻՒՆԻ ՎԵՐՆԱՅԱՐԿԸ
202, Ավընիւ Շուազի, Փարիզ, մէթրօ՝ փլաս տ'իթալի
Բանախօսութիւն, արտասանութիւն, երգ եւ այլն.
Մուտքը ազատ է: ճոխ պիւֆէ:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ
21 ՅՈՒՆՈՒԱՐ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 10ԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՌԱՒՕՏ
ԱՆԿԷՆԻ ՍԱԼ ՏԷ ՖԷԹԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.— Տիկիններ՝ Սուրաբեան (երգ, պար), Ինքասպալեան (դաշնակ), Mlle Bonca (ջութակ): Պարոններ՝ Շահան Սարեան (արտասանութիւն), Ժպտունի, Մարգարեան, Mr Max (Imitateur). Քիւրքճեան (սրինգ) եւ ուրիշներ:
Ճոխ պիւֆէ, անակնկալներ, ճազի մեծ խումբ:
Մուտք՝ 10 Ֆրանք:

## Հայ Բժշկական Միութեան դասախօսութիւնը

տեղի կ'ունենայ Salle des Sociétés Savantesի մէջ
28, Rue SERPENTE, PARIS
12 ՅՈՒՆՈՒԱՐ ԺԱՄԸ 9ին
Նախագահութեամբ՝ ՏՕՔԹ. Վ. Յ. ԹՈՐԳՈՄԵԱՆԻ
Կը խօսի՝ ՓՐՈՖԷՍԷՕՐ ԱՂԱՋԱՆԵԱՆ
Ֆրէօտիզմի վրայ
Մուտքը ազատ է

Յ.

Հ. Դ.

## Փարիզ եւ շրջակաները

**ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԿԵՐԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ**

Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ *արտակարգ Ընդհ. ժողովի կը հրաւիրէ ՓԱՐԻԶԻ, ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ, ՊՈՒԱ-ՔՕԼՈՆՊԻ, ԱԼՖՈՐՎԻԼԻ եւ ԱՌՆՈՒՎԻԼ-ԼԷ-ԿՈՆԷՍԻ կոմիտէներու, ենթակոմիտէներու եւ խումբերու անդամները, 22 Յունուար, կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2ին* Sociétés Savantes*ի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:*

**ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷՆ** սարքած է ընկերական հանդիպում մը այս Հինգշաբթի երեկոյ ժամը *8.30*ին փըթիթ Սուրսի ներքնայարկը: Կը հրաւիրուին բոլոր ընկերները:

*ՇԱՎԻԼԻ* «ԱրդուԹեան» խումբի ժողովը վաղը, երկուշաբթի երեկոյ ժամը *8.30*ին սովորական հաւաքատեղին:

---

## Հրապարակային դասախօսութիւն

*ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ «ԱՐԾԻՒ» ԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ*

Այսօր, կիրակի, կէս օրէ վերջ *ժամը 3ին*,

150, Route d'Orléans (Cachan) սրահին մէջ

կը խօսի ընկեր *ԱՐՇԱԿ ՋԱՄԱԼԵԱՆ*,

նիւթ՝ *«Դաշնակցութեան դերը ներգաղթի մասին»:*

---

## Ընտանեկան ցերեկոյթ-խնջոյք

կազմակերպուած՝

*ՍԱԼՆՈՅՁՈՐԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ*

*ԱՅՍՕՐ, ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ 2ԻՆ ՔԱՖԷ ՔԼԷՐ ՏԸ ԼԻՒՆԻ ՎԵՐՆԱՅԱՐԿԸ*

202, Ավընիւ Շուազի, Փարիզ, Մէթրօ՝ Փլաս տ'Իթալի

*Բանախօսութիւն, արտասանութիւն, երգ եւլն.:*

Մուտքը ազատ է: ճոխ պիւֆէ:

---

## ՀԱՆԴԷՍ-ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ի պատիւ ԱՐԺ. Տ. ՎԱՀԱՆ ՔԱՀԱՆԱՅ ԽՈՅԵԱՆԻ

ԻՐ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ԵՒ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ՅԻՍՆԱՄԵԱՅ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ԱՌԹԻՒ

իր հայրենակից Տրապիզոնցիներու եւ Պոլսեցի համակիրներու կողմէ

*ԱՅՍՕՐ, ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3.30 — 7.30*

VICTOR HUGO սրահին մէջ, 46bis, rue St. Didier (Métro: Victor Hugo)

կը խօսին՝ *Պ. ՀՄԱՅԵԱԿ ԽՈՍՐՈՎԵԱՆ* եւ *Պ. ԵՐՈՒԱՆԴ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ* (Տրապիզոնի Հայրենակցական Միութեան կողմէ)

գեղարուեստական բաժին — ճոխ եւ ձրի պիւֆէ

*ՄՈՒՏՔ 15 ՖՐԱՆՔ*

---

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

*ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*Այսօր, կիրակի ժամը ճիշդ 15ին*

*ՍԵՒՐԻ «ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ» ՍՐԱՀԻՆ ՄԷՋ* — 26, rue Troyon. Sèvres

*ՅԱՅՏԱԳԻՐ* (Ա. մաս).— *Բացման խօսք*՝ X.: *Ուսանողութիւն*՝ Հ. Սաճակ վ. Տէր-Յովսէփեան: *Արտասանութիւն*՝ Գր. Լաքքա եւ Օր. Ա. Տէր-Թովմասեան: *Խմբերգներ եւ մեներգներ*՝ «Կիլիկիա» երգչախումբէն, ղեկավարութեամբ գ. մ. Այէմշաճի:

Բ. մաս.— *ՎՀՈՒԿԸ*, Թատերական էթիւտ *1* արար, Ա. Չէխով, (*Թարգմ. Գր. Լաքքա*): գործող անձինք.— *Սավելի (տիրացու)*՝ Գր. Լաքքա, *Րայիսա (կինը)*՝ Տիկ. Սուրաբեան, *Սուրհանդակ*՝ Սարիմ, *Կառապան*՝ Գր. Վահան:

*Գիներ*՝ *20, 10 եւ 5 ֆրանք:*

---

## Գիւղացական հանդէս

*Առնուվիլ-լէ-Կոնէսի* Սրբատ *Միութեան Հայերէն դասընթացքի երկսեռ աշակերտութեան կողմէ, այս կիրակի, 22 Յունուար, կէս օրէ վերջ ժամը 2.30ին «Կալման»ի սրահին մէջ* (Villiers-le-Bel*ի կայարանին ճիշդ դիմացը*):

Կը ներկայացուի՝ ՁԻՒՆԱՃԵՐՄԱԿԸ կամ ԵՕԹԸ ԳԱՃԱՃՆԵՐԸ

*Բարոյալից Թատերախաղ 5 արար: Գերման հէքեաթէ Թատերգութեան վերածուած Պ.* Արամ *Վտարանդիի կողմէ: 35 դերակատարներ:*

*Մուտք*՝ 5 *ֆրանք:*

---







ՏԻԿԻՆ ԼԻՒՍԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ

---







































**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme :-: PARIS (13e)**

**Le Gérant : H. STEPHAN**

յուզիչ տեսարան մը։ Երբ Ռուսեր բռնութեամբ կ'աշխատէին դարմանատունէն կայարան տանիլ աղջիկը, որ կը դիմադրէր, կը մերժէր եւ յուսահատութեամբ կը պայքարէր։ Կայարան հասած, աղջիկը երկաթուղիի պաշտօնէութենէն կը խնդրէր ազատել զինքը առեւանգիչներուն ձեռքէն։ Բայց ամէն մարդ խենդ մը կը կարծէր աղջիկը։ Բոլշեւիկները կը յաջողին շոգեկառք դնել ու տանիլ Մոսկուա։ Այնուհետեւ ոչ մէկ լուր այս աղջկան մասին։

Զուիցերիական թերթերը, նկարագրելով այս դէպքը, կը պահանջեն քննութիւն մը բանալ եւ խզել յուութիւնը։

Յ.

Հ. Դ.

## Փարիզ եւ արուարձաններ

**ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԿԵՐԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ**

Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ *արտակարգ Ընդհ. Ժողովի կը հրաւիրէ ՓԱՐԻԶԻ, ԻՍԻ - ԼԷ - ՄՈՒԼԻՆՈՅԻ, ՊՈՒԱ - ՔՕԼՈՆՊԻ, ԱԼՖՈՐՎԻԼԻ եւ ԱՌՆՈՒՎԻԼ - ՍԱՐՍԷԼԻ Կոմիտէներու, Ենթակոմիտէներու եւ խումբերու անդամները, այսօր, կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2ին* Sociétés Savantes*ի սրահին մէջ*, 28, rue Serpente*։ Մէթրօ՝ Օտէօն։ Կարեւոր օրակարգ։*

### Գաւառ

*ՄԱՐՍԷՅԼԻ «Աղբիւր Սերոբ» ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը այսօր, կիր. երեկոյ ժամը 6ին։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատանեկան Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այսօր կիր. կէս օրէ վերջ ժամը 2ին իրենց Ընթերցարանին մէջ։*

*ՎԻԷՆԻ կոմիտէն դասախօսական - վիճաբանական ժողովի կը հրաւիրէ իր շրջանի Քրիստափոր, Ռոստոմ, Ապառաժ խումբերու բոլոր ընկերները այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Հ. Յ. Դ. Խաժակ ակումբին մէջ։*

*Կը դասախօսէ՝ ընկ. ՀՐԱՉ։ Նիւթ՝* Հ. Յ. Դաշնակցութեան վերաբերմունքը հանդէպ Խորհ. Ռուսաստանի եւ Հայաստանի։

**ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ**

*ԱՒՏՕ* խումբի դասախօսական-վիճաբանական ժողովը տեղի կ'ունենայ այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը *4.30*ին իրենց սովորական հաւաքատեղին։ կը դասախօսէ ընկեր *Պ. ՀԻՒՍԵԱՆ։*

*ԿԱՐՏԱՆԻ* ենթակոմիտէի դասախօսական-վիճաբանական ժողովը տեղի կ'ունենայ այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին Հ. Յ. Դ. Ակումբի մէջ։ կը դասախօսէ ընկեր *Ս. ՄԻԼՏՈՆԵԱՆ։*

**ԼՈՒԱՌԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ** նախաձեռնութեամբ մօտ օրէն Սէն Թ'էթիէնի մէջ կը ներկայացուի *«ՎԱՐԴԱՆԱՆՑ»*ը։ Մանրամասնութիւնները յաջորդով։

## Ֆրանսահայ Կարմիր Խաչի Փարիզի մասնաճիւղի

*Տարեկան պարահանդէսը* MAC - MAHON*ի շքեղ սրահներուն մէջ։ 1933 Փետրուար 11ին։*

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*ՖՐԱՆՍ. ԲԱՆԱԿԻ ՀԱՅ ՆԱԽԿԻՆ ԿԱՄԱՒՈՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*26 Յունուար Հինգշաբթի գիշեր ժամը 8.30ին*

**Petit Journal***ի սրահին մէջ,* **21, rue Cadet**

բանախօս՝ *Պ. ԱՐՇԱԿ ՉՕՊԱՆԵԱՆ,* պատգամաւոր կաթող. ընտրութեան

*Նիւթ՝ ԱՄԻՍ ՄԸ ՀԱՅԱՍՏԱՆ*

*Գեղարուեստական բաժնին կըմասնակցին՝* Օր. Պիւլպիւլեան, պ. պ. Սերժ Թորոսեան, Ա. Գմբէթեան եւ Գր. Լաքքայ։

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Փարիզի Հայոց Աղքատախնամ Ընկերութեան կողմէ*

**4 ՓԵՏՐ. ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 10ԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՌԱՒՕՏ, ՇԱՆ ԶԷԼԻԶԷԻ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ 79, Ave. des Champs Elysées**

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## Նախատակ Գրագէտներու Բարեկամներ

*ԻՐ ՄԱՏԵՆԱՇԱՐԻՆ 7ՐԴ ՀԱՏՈՐԸ*

ՏԻԳՐԱՆ ՉԷՕԿԻՒՐԵԱՆԻ «ՎԱՆՔԸ» — «ՀԵՐՈՍԸ»

*ԳԻՆ՝* 20 *ՖՐԱՆՔ* կամ 1 *ՏՈԼԱՐ*

**M. BARSAMIAN, 121 rue Marcadet, Paris (18)**

գուշակուհի

**ՏԻԿ. ՄԱՐԻԱ ՁԷՆԻ**



կը բացատրէ անցեալը, կ'առաջնորդէ ներկային մէջ, կը գուշակէ ապագան, ըստ ձեռքի գիծերուն, աստղերու եւ քարտերու։ Ամէն օր (կիր.ն ալ մէջը) ժ. 3-7, բացի երկ.է։ 62 Rue de la Rochefoucauld, բակին խորը, բ. յարկ, աջ կողմ, Métro Pigalle.

**Կ'ՈՒԶՈՒԻ** դերձակի աշկերտ մը։ Դիմել *Պ. ԳՈՐԳԻԿԵԱՆԻ*։ 31, Route Choisy, Ivry s/Seine։

**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Damesme :-: PARIS (13e)**
**Le Gérant : H. STEPHAN**

*Ծախու է* *տեղպողական մեկնումի պատճառաւ կեդրոն Թաղամասի մէջ կօշկակարի խանութ մը՝ բոլոր կազմածներով (մեքենայ, գործիք եւայլն.) միասին։ Բնակարան՝ 2 սենեակ, խոհանոց։ Վարձք՝ 3000 ֆրանք, պայլ՝ 6 տարի։ Մանրամասնութեանց համար դիմել՝ Տէր Յակոբեանի,* 14 rue Medéah, *P*aris (14)։



Արման Կոթիկեան որ պիտի կատարէ (*Աթանէս*)ի դերը

*12 րդ. Ներկայացում*

*12 րդ. Ներկայացում*

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ

ղեկավարութեամբ՝ ԱՐՄԱՆ ԿՈԹԻԿԵԱՆԻ եւ Ս. ԹՈՐՈՍԵԱՆԻ

ԲԱՑԱՌԻԿ ԵՒ ՇՔԵՂ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Հովանաւորութեամբ Պ. Ս. ՏԷՕՔՄԷՃԵԱՆԻ*

*29 Յունուար Կիրակի գիշեր ժամը 8.40ին*

**Sociétés Savantes**ի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ **8, rue Danton, Paris**

**Métro: St. Michel et Odéon**

*Ի պատիւ ԱՐՄԱՆ ԿՈԹԻԿԵԱՆԻ կը ներկայացուի*

Առաջին անգամ Փարիզի մէջ

## ԱԻԵՐԱԿՆԵՐԻ ՎՐԱՅ

Տրամ չորս արար Հեղինակ՝ Շիրվանզադէ Բեմադիր՝ Ա. Կոթիկեան

*Կը մասնակցին.—* Տիկ. Տիկ. Լիւսի Պետրոսեան, Գայեանէ, Լուսիկ. Ժ. Շաֆ-Պարոնեան, Արմենուհի։ Պ. Պ. Գմբէթեան, Թորոսեան, Նիկողոսեան, Շահլամեան, Սանճագ. Գազանճեան։

**ՏԵՂԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ 5, 10 ԵՒ 15 ՖՐԱՆՔ**

*Այս Բացառիկ ներկայացման առթիւ կազմուած յատուկ Յանձնաժողովի անդամներն են՝* Պ. Պ. Հրաչ-Ներուանդ. Մկրտիչ Պարսամեան, Լեւոն Մեսրոպ, Գ. Մելոյեան, Հ. Մարմարեան, Ս. Թէրզեան։

Յ. Հ. Դ.

## Փարիզ եւ արուարձանները

ՓԱՐԻԶԻ եւ արուարձաններու ընկերներու հանդիպումը տեղի կ'ունենայ ամէն Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Քաֆէ տը Սուրսի ներքնասրահը, Մէթրօ Օտէոնի ճիշդ դիմացը:

ՓԱՐԻԶԻ «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 32, Ave Gobelinsի սրճարանին վերնայարկը:

ԱՌՆՈՒՎԻԼ ԼԸ ԿՈՆԷՍԻ «Ռազմիկ» խումբի ժողովը վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին ընկեր Արփիարեանի բնակարանին մէջ: Ներկայ կ'ըլլայ ընկեր Խաչիկ Մկրտիչեան:

ՊԱՆԵԷՕ - ՔԱՇԱՆԻ «Արծիւ» խումբի ընկերական ժողովը այս Չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, ընկեր Ս. Գարակէօզեանի բնակարանը: Պարտաւորիչ ներկայութիւն:

### Գաւառ

ՇԱԼԻԹԻ «Բաբգէն Սիւնի» խումբի ընկերական ժողովը այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին ծանօթ հաւաքատեղին:

Հ. Յ. Դ. Տէսինի Պատանեկան Միութեան անդամական ընդհ. ժողովը վաղը, Երկուշաբթի երեկոյ ժամը 8ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

### ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԺՈՂՈՎՆԵՐԸ

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէն արտակարգ ժողովի կը հրաւիրէ «Աղբիւր-Սերոբ» ենթակոմիտէի ընկերները այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը:

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէն արտակարգ ժողովի կը հրաւիրէ «Իշխան» ենթակոմիտէի ընկերները այսօր Կիրակի երեկոյ ժամը 8.30ին Պատանեկան Միութեան Գրադարան-Ընթերցասրահին մէջ: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը:

ՎԱՐԴԱՆԱՆՑի տօնի հանդէսը «ՍԻՓԱՆ»ի նախաձեռնութեամբ Փետրուար 26ին Կիրակի, կէս օրէ վերջ ժամը 3ին:



*12 րդ. ներկայացում*

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ

Ղեկավարութեամբ՝ ԱՐՄԱՆ ԿՈԹԻԿԵԱՆի եւ Ս. ԹՈՐՈՍԵԱՆի

ԲԱՑԱՌԻԿ ԵՒ ՇՔԵՂ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Հովանաւորութեամբ Պ. Ս. ՏԷՕՔՄԷՃԵԱՆի

Այսօր, Կիրակի գիշեր ժամը 8.40ին

**Sociétés Savantes**ի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ **8, rue Danton, Paris**

**Métro: St. Michel et Odéon**

Ի պատիւ ԱՐՄԱՆ ԿՈԹԻԿԵԱՆի կը ներկայացուի

Առաջին անգամ փարիզի մէջ

## ԱՒԵՐԱԿՆԵՐԻ ՎՐԱՅ

Դրամ չորս արար. Հեղինակ՝ Շիրվանզադէ. Բեմադիր՝ Ա. Կոթիկեան

Կը մասնակցին.— Տիկ. Տիկ. Լիւսի Պետրոսեան, Գայեանէ, Լուսիկ. Ժ. Շահ-Պարոնեան, Արմենուհի, Պ. Պ. Գմբէթեան, Թորոսեան, Նիկողոսեան, Շահյամեան, Սանճագ. Գազանճեան:

ՏԵՂԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ 5, 10 ԵՒ 15 ՖՐԱՆՔ

Այս Բացառիկ ներկայացման առթիւ կազմուած յատուկ Յանձնաժողովի անդամներն են՝ Պ. Պ. Հ. Երուանդ. Մկրտիչ Պարսամեան, Լեւոն Մեսրոպ, Ղ. Մելոյեան, Հ. Մարմարեան, Ս. Թէրզեան:



ՎԷՆՍԷՆԻ ՀԱՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԵՐԿՍԵՌ ՄԻՈՒԹԵԱՆ հայ լեզուի կիրակնօրեայ դասաւանդութիւնները կը սկսին այսօր կիրակի առաւօտ, վէնսէն, Րիւ տը լա Լիպէրթէ. ֆրանսական վարժարանին մէջ (Ecole dm Nord): կը հրաւիրենք վէնսէնի եւ շրջակայից ծնողքները որ հաճին այս առաւօտ, ժամը 8էն սկսեալ ներկայացնել իրենց մանուկները:

Ներկայիս Միութիւնս իր մասնաւոր շնորհակալութիւնները կը յայտնէ ֆրանսական կառավարութեան, որ տրամադրեց վարժարանը վէնսէնի եւ շրջակայից հայ մանուկներուն:


Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN




Վ. ՍՎԱՃԵԱՆ (խուրշիտ պէյ)

## Palais de la Mutualité

**24, Rue St. Victor** **Métro: Maubert Mutualité**

19 ՓԵՏՐ. ԿԻՐԱԿԻ ՑԵՐԵԿ ԺԱՄԸ 3ԻՆ

ՊՈԼՍԷՆ ՆՈՐ ԺԱՄԱՆԱԾ ԾԱՆՕԹ ԵՐԳՉՈՒՀԻ

ՏԻԿԻՆ ՆԵԿՍԱՐ ՊԱԼԸԳՃԵԱՆ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ ՍԻՐԱՅՕԺԱՐ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ԵՒ ՂԵԿԱՎԱՐՈՒԹԵԱՄԲ

ՊՈԼՍՈՅ ԵՒ ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԲԵՄԻ ՀՌՉԱԿԱՒՈՐ ԱՐԵՒԵԼԵԱՆ ՔՕՄԻՔ

## Պ. ՀԱՅԿ ՉՈՒՀԱՃԵԱՆԻ

ԼԷՊԼԷՊԻՃԻ ՀՕՐ_ՀՕՐ ԱՂԱ

ՔՐՔՋԱԼԻՐ ՕՓԵՐԷԹ ԵՐԵՔ ԱՐԱՐ, ԹՈՒՐՔԵՐԷՆ ԼԵԶՈՒՈՎ

Տոմսերը կը ծախուին ծանօթ վայրերը եւ հանդէսին օրը կիշէն:



Տիկին Ապահունի եւ զաւակունք, ինչպէս նաեւ պարագաները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն՝

Պ. ԿԱՐԱՊԵՏ ԱՊԱՀՈՒՆԻԻ

յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ 26 Յունուար 1933 ժամը 5ին: Հոգեհանգիստի արարողութիւնը կը կատարուի կիրակի առաւօտ ժամը 9ին իր բնակարանին մէջ, Շուազի լը Ռուա, 1bis, rue Rouget de L'Isle, եւ ժամը 10ին յուղարկաւորութիւնը Շուազի լը Ռուայի գերեզմանատունը:

### ՀՐԱՒԷՐ

Լիոնի Հայ Լէգէոնականները կը հրաւիրուին կարեւոր խորհրդակցութեան մը համար այսօր, Կիրակի, ժամը 2.30ին, 40, rue Pierre Corneille, Քէնտիրեանի ճաշարանը:

